Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 22 ՆՈՅԵՄԲԵՐ 1958



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։



# ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՀԵՐԹԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ

*Մեր երկրում ամենուրեք ծավալվել է բնակչության Համամիութենական մարդահամարի նախապատրաստությունը։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ մարդահամարը նշանակված է 1959 թվականի հունվարի 15-ին։*

*Առաջիկա մարդահամարը մեծ նշանակություն ունի Սովետական պետության կյանքի համար։ Այն կարտացոլի տնտեսական ու կուլտուրական շինարարության բնագավառում մեր ժողովրդի ձեռք բերած հաջողությունները, մանրամասն ու ճշգրիտ տեղեկություններ կտա բնակչության քանակի և երկրի տերիտորիայում նրա տեղաբաշխման մասին, բնակչության կազմի մասին՝ ըստ սեռի, տարիքի, ազգության, կրթության և մայրենի լեզվի, ինչպես նաև տեղեկություններ կտա բնակչության տեղաբաշխման մասին՝ ըստ զբաղմունքի, ժողովրդական տնտեսության ճյուղերի, արտադրության ձևերի և հասարակական խմբերի։ Այս մարդահամա-*



րի շնորհիվ ստացված նյութերը կօգտագործվեն կոմունիստական շինարարության նոր պլանների մշակման և իրականացման գործում։

Բնակչության մարդահամարները կատարվում են աշխարհի բոլոր երկրներում։ Մարդահամարներ անցկացնելու անհրաժեշտությունը բխում է այն բանից, որ բնակչությունն անընդհատ շարժման և փոփոխման պրոցեսում է գտնվում։ Բայց Սովետական Միությունում անցկացվող մարդահամարները արմատապես տարբերվում են կապիտալիստական երկրների մարդահամարներից։ Մեր երկրում դրանք կատարվում են խիստ գիտական հիման վրա և ծառայում են ժողովրդի շահերին։ Իսկ կապիտալիստական երկրներում մարդահամարների նպատակն է այնպիսի տեղեկություններ ստանալ, որոնք անհրաժեշտ են բուրժուազիային իր տիրապետությունն ամրապնդելու, աշխատավորական մասսաների շահագործումն ու կեղեքումն ուժեղացնելու համար։ Այդ նպատակներով բուրժուական վիճակագրությունն ամեն կերպ աղավաղում և կեղծում է ազգաբնակչության մարդահամարների հանրագումարային տվյալները։ Նա առանձնապես մեծ «մշակման» է ենթարկում բնակչության դա-



սակարգային և ազգային կազմի ցուցանիշները։

Սոցիալիստական պետության պայմաններում բնակչության մարդահամարները ամբողջ երկրի գործն են և անց են կացվում ժողովրդական լայն մասսաների ակտիվ մասնակցությամբ։ Սովետական իշխանության տարիներին ՍՍՌՄ-ում անց է կացվել բնակչության երեք համընդհանուր մարդահամար։ Առաջին մարդահամարն անց է կացվել 1920 թվականի օգոստոսին, երբ մեր տերիտորիայի զգալի մասում դեռևս շարունակվում էր օտարերկրյա ռազմական ինտերվենցիան և քաղաքացիական պատերազմը։ Այդ մարդահամարին Վ. Ի. Լենինը հսկայական նշանակություն էր տալիս։ Նա Սովետական իշխանության բոլոր օրգաններից, սովետական բոլոր հիմնարկներից պահանջում էր ամեն տեսակ օգնություն ցույց տալ մարդահամարի անցկացմանը։ Թեև 1920 թվականի մարդահամարի տվյալները լրիվ ել չէին (երկրի տերիտորիայի մի մասը զավթված էր ինտերվենտների կողմից), այնուամենայնիվ դրանք ընկան պատերազմի հետևանքով ավերված Սովետական պետության ժողովրդական տնտեսության վերականգնման պլանների մշակման հիմքում։

Բնակչության Համամիութենական երկրորդ մարդահամարը կատարվեց 1926 թվականի դեկտեմբերին։ Մարդահամարի անցկացման անհրաժեշտությունը թելադրված էր այն բանով, որ այդ ժամանակ սովետական ժողովուրդը հաջողությամբ ավարտեց ժողովրդական տնտեսության վերականգնումը և գործնականորեն ձեռնամուխ եղավ սոցիալիզմի կառուցմանը։ Մարդահամարի տվյալներով, բնակչության թիվը կազմում էր 147 միլիոն մարդ, այդ թվում քաղաքներում՝ 26,3 միլիոն։ Մարդահամարի տվյալները ելակետային հիմք դարձան ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանը մշակելու և կազմելու համար։

Բնակչության Համամիութենական երրորդ մարդահամարը անց է կացվել 1939 թվականի հունվարին։ Մարդահամարի տվյալներում արտացոլվեցին սովետական ժողովրդի մեծագույն հաղթանակները։ ՍՍՌՄ-ում վերջնականապես լիկվիդացվեցին շահագործող տարրերը, մեկընդմիշտ ոչնչացվեց մարդու շահագործումը մարդու կողմից։ Երկրի էկոնոմիկայում սկսեց ղեկավար դեր խաղալ ծանր ինդուստրիան և առաջին հերթին մեքենաշինությունը։ Ձեռքի աշխատանքի վրա հիմնված մանր, մասնատված միայնակ գյու-



ղացիական տնտեսությունների փոխարեն ստեղծվեցին խոշոր մեքենայացված կոլեկտիվ տնտեսություններ։ Սովետական Միությունը հետամնաց ագրարային երկրից վերածվեց հզոր ինդուստրիալ-կոլտնտեսային տերության։ Բնակչության ընդհանուր քանակը հասավ մինչև 170,6 միլիոն մարդու, կամ 1926 թվականի համեմատությամբ ավելացավ 15,9 տոկոսով։ Բնակչության աճի նման թափ չի ունեցել Եվրոպայի և ոչ մի կապիտալիստական երկիր, ինչպես նաև ԱՄՆ-ը և Ճապոնիան։

Բնակչության առաջիկա չորրորդ մարդահամարը, 1939 թվականի մարդահամարից հետո, անցկացվում է 20 տարի անց։ Այդ տարիների ընթացքում Սովետական Միությունը անցել է մեծ ուղի։ Չնայած պատերազմի հետևանքով առաջացած ծանր զոհերին և կորուստներին, սովետական ժողովուրդը ոչ միայն վերականգնեց թշնամու ամբողջ ավերածը, այլև նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ շատ առաջ գնաց։ Մեր երկրի ժողովրդական տնտեսությունը առանձնապես արագ տեմպերով սկսեց զարգանալ ՍՄԿՊ XX համագումարից հետո։

Արդյունաբերության և գյուղատնտեսու-

թյան բնագավառում ձեռք բերված հաջողությունները թույլ տվեցին անցկացնել մի շարք խոշոր միջոցառումներ աշխատանքի պայմանները բարելավելու և ժողովրդի բարեկեցությունը բարձրացնելու ուղղությամբ։ Շարունակվում է արդյունաբերության բանվորների և ծառայողների անցումը կրճատված բանվորական օրվա։ Բարձրացված է ցածր վարձատրվող բանվորների աշխատավարձը։ Գնման նոր գներ են սահմանված գյուղատնտեսական մթերքների համար։ Միջոցներ են ձեռնարկված աշխատավորների բնակարանային պայմանները արմատապես բարելավելու ուղղությամբ։ Զգալիորեն ավելացվել են կենսաթոշակային ապահովության չափերը։

Ժողովրդի բարեկեցության աճման շնորհիվ այս տարիների ընթացքում փոփոխություններ է կրել ՍՍՌՄ բնակչության թվական կազմը։ Ծնունդը ՍՍՌՄ-ում բարձր մակարդակի վրա է գտնվում, մահացությունը տարեցտարի նվազում է։ Ահա արդեն մի քանի տարի է, ինչ երկրի բնակչության ամենամյա աճը գերազանցում է 3 միլիոն մարդուց։ 1913 թվականի համեմատությամբ ավելի քան չորս անգամ նվազել է ՍՍՌՄ բնակչության մահացությունը, իսկ երեխաների մա-



հացությունը 1940 թվականի համեմատությամբ նվազել է 4 անգամ, իսկ 1913 թվականի համեմատությամբ 6 անգամ։ Այժմ ՍՍՌՄ-ում մահացությունն ավելի ցածր է, քան Անգլիայում, Արևմտյան Գերմանիայում, ԱՄՆ-ում և Ֆրանսիայում։ ՍՍՌՄ բնակչության կյանքի միջին տևողությունը 1955—56 թվականներին, մինչռևոլյուցիոն ժամանակաշրջանի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 2 անգամ՝ 32-ից հասնելով մինչև 67 տարու։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած համաշխարհային-պատմական հաջողությունները արտացոլելու է առաջիկա բնակչության Համամիութենական մարդահամարը։ Այս մարդահամարից ստացվելիք տվյալները կհանդիսանան մեր երկրում կոմունիստական շինարարության նոր պլանների մշակման և իրականացման կարևորագույն հիմքերից մեկը։

Բնակչության մարդահամարի անցկացումը այնպիսի վիթխարի երկրում, ինչպիսին մերն է, շատ բարդ խնդիր է, որը պահանջում է ամենամանրակրկիտ նախապատրաստում։ Մարդահամարը ճիշտ և արագ կերպով կազմակերպելու համար երկրում անց

են կացված նախապատրաստական միջոցա-
ռումներ։ Շրջաններում և քաղաքներում մար-
դահամարի ժամանակ մտցվելու է մարդա-
համարի շրջանացում, այսինքն ամեն մի
շրջանի և քաղաքի տերիտորիայի բաժանումը
մարդահամարային բաժինների, որոնք իրենց
հերթին բաժանվում են հրահանգչական տե-
ղամասերի։ Մարդահամարը նշանակված է
1959 թվականի հունվարի 15-ին։ Բնակչու-
թյան հաշվեգրումը կատարվելու է տեղական
ժամանակով հունվարի 14-ի լույս 15-ի գի-
շերվա ժամը 12-ի դրությամբ։ Սա իհարկե չի
նշանակում, թե մարդահամարը կատարվելու
է գիշերը։ Հաշվարարները մարդահամարի
թերթերը լրացնելու իրենց աշխատանքը
կսկսեն հունվարի 15-ի առավոտյան ժամը
8-ին և մարդահամարը կանցկացնեն ցերեկը,
իսկ անհրաժեշտ դեպքում՝ երեկոյան և այն
կավարտեն հունվարի 22-ին։

Բնակչության հաշվեգրման որոշակի ժամ
սահմանելը ՍՍՌՄ-ի համար կարևոր նշա-
նակություն ունի։ Չէ՞ որ Սովետական Միու-
թյունում ամեն մի րոպեում միջին հաշվով
ծնվում է 10 մարդ, իսկ մահանում 3 մարդ,
այսինքն՝ մեր երկրի բնակչությունը ամեն
րոպե ավելանում է շուրջ 7 մարդով։ Անցյալ
տարի ՍՍՌՄ բնակչության բնական աճը



միջին հաշվով, մեկ օրվա ընթացքում, կազ-
մել է մոտավորապես 10 հազար մարդ։

Հերթական մարդահամարը, ինչպես և նա-
խորդները, անց է կացվելու ըստ քաղաքացի-
ների բնակության վայրի, այլ ոչ թե ըստ աշ-
խատանքի կամ ծառայության վայրի։ Յուրա-
քանչյուր մարդ գրանցվում է այն քաղաքում
կամ գյուղում, որտեղ նա անց է կացրել
հունվարի 14-ի լույս 15-ի գիշերը, անկախ
այն բանից, նա այդտեղ մշտական է բնակ-
վում, թե ժամանակավոր։ Պետք է նկատի
ունենալ, որ մարդահամարը հաշվի է առնե-
լու ինչպես ողջ առկա բնակչությանը, նե-
րառյալ ժամանակավոր բնակվողներին, այն-
պես էլ մշտական բնակչությանը ու ժամա-
նակավոր բացակայողներին։ Այսպիսի կար-
գը չի հանգեցնի բնակչության կրկնակի
հաշվեգրման, քանի որ մարդահամարի տվ-
յալների մշակման ժամանակ կլինի բնակ-
չության երկու թիվ՝ առկա և մշտական։
Մարդահամարի ճիշտ կազմակերպման դեպ-
քում բնակչության մշտական բնակվողների
թիվը և ժամանակավոր բնակվողների թիվը,
երկրում ամբողջությամբ վերցրած, պետք է
համընկնի։

Մարդահամարի թերթերը լրացնում են
հաշվարարները հարցման ենթարկվողի աս-

ծի համաձայն, առանց փաստաթղթերն ստուգելու։ Հաշվարարներին արգելվում է ստացած տեղեկությունները հրապարակել։ Մարդահամարի նյութերը օգտագործվելու են պետական և տնտեսական մարմինների, պլանային մարմինների և գիտական կազմակերպությունների կողմից տնտեսության, կուլտուրայի, գիտության հետագա զարգացման, բնակչության նյութական բարեկեցության բարձրացման համար միջոցառումներ մշակելու նպատակով։

Հաշվեգրումը վերջանալուց հետո բնակչության հաշվառման ճշտությունը ստուգելու համար 10 օրվա ընթացքում՝ հունվարի 23-ից փետրվարի 1-ը ներառյալ, կատարվելու է բոլոր բնակելի շենքերի կոնտրոլ շրջագայություն։ Այդ շրջագայությունը անց են կացնելու հրահանգիչ-հսկիչները տեղամասի հաշվարարների հետ միասին, իսկ գյուղական վայրերում՝ նաև գյուղական Սովետի ներկայացուցչի հետ։ Մարդահամարի ժամանակ բացթողումից և կրկնակի հաշվեգրումից խուսափելու համար լրացվելու են կոնտրոլ բլանկներ և տրվելու են տեղեկանքներ մարդահամարի ենթարկվելու մասին։ Մարդահամարի ենթարկվելու մասին տեղեկանքներ տրվում են բոլոր ժամանակավոր



բնակվողներին։ Բացի դրանից, այդ տեղեկանքները տրվում են այն բոլոր անձանց, որոնց համար կազմված են կոնտրոլ բլանկներ։ Կոնտրոլ բլանկը լրացվում է այն դեպքերում, երբ կասկած կա, թե տվյալ քաղաքացին ենթարկվե՞լ է արդյոք մարդահամարի այլ վայրում։

Բնակչության հերթական Համամիութենական մարդահամարը համաժողովրդական գործ է։ Մարդահամարի հաջողությունը նախ և առաջ որոշելու են մարդիկ, կադրերը։ Մարդահամարը անց են կացնելու ավելի քան 450 հազար հաշվարարներ, շուրջ 100 հազար հրահանգիչ-հսկիչներ և մարդահամարի բաժինների վարիչներ։ Ընդհանուր թվով բնակչության մարդահամարը անց է կացնելու շուրջ 600 հազար մարդուց բաղկացած մի ապարատ։

Մարդահամարին ակտիվորեն կմասնակցեն պարտիական, արհմիութենական, կոմերիտական և այլ հասարակական կազմակերպությունները։ Նրանց պարտքն է՝ սովետական մարդկանց մանրամասնորեն ծանոթացնել առաջիկա մարդահամարի կարգի և խնդիրների հետ, բացատրել նրանց մեր պարտիայի քաղաքականությունը և այն հաջողությունները, որոնց Սովետա-

կան Միությունը հասել է վերջին տարիներին։ Մասսայական-բացատրական աշխատանքը նպատակահարմար է կառուցել ըստ նախապես կազմված պլանի, լայնորեն օգտագործելով աշխատավորների դեպուտատների Սովետների ընտրությունների ժամանակ քաղաքական ագիտացիայի բոլոր իրենց արդարացրած ձևերն ու մեթոդները։

Մարդահամարի օրերին առանձնապես մեծ է ագիտատորների և պրոպագանդիստների դերը։ Նրանց վրա դրված է բնակչության համար դասախոսություններ, զեկուցումներ, զրույցներ, հարցի ու պատասխանի երեկոներ անցկացնելը։ Այս միջոցառումների անցկացումը ագիտատորներին և պրոպագանդիստներին թույլ կտա շփվել բնակչության բոլոր խավերի հետ, սովետական քաղաքացիներին հանգամանորեն բացատրել մարդահամարը անցկացնելու նպատակներն ու կարգը։

«Մարդահամարի գործը,— ասել է Վ. Ի. Լենինը,— գերատեսչական գործ չէ, այլ ռեսպուբլիկայի գործն է, սովետական բոլոր հիմնարկների գործը»։ Խնդիրն այն է, որպեսզի ամենուրեք բնակչության հերթական մարդահամարը անցկացվի կազմակերպված և հաջողությամբ։

---

## ԻՆՉՊԵՍ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ԹԵՐԹԻ ՀԱՐՑԵՐԻՆ

ԱՌԱՋԻՆ ՀԱՐՑ. Առնչությունը ընտանիքի գլխավորի հետ (կինը, ամուսինը, տղան, աղջիկը, մայրը, քույրը, եղբոր կամ քրոջ որդին և այլն)

Յուրաքանչյուր ընտանիքում առաջինը գրվում է ընտանիքի գլխավորը։ Եթե ընտանիքը դժվարանում է անվանել ընտանիքի գլխավորին, ընտանիքի գլխավոր պետք է համարել այստեղ մշտապես ապրող անդամներից նրան, ով տալիս է գոյության գլխավոր միջոցները։ Եթե ընտանիքի գլխավորը մշտապես ապրում է ուրիշ վայրում, որպես ընտանիքի գլխավոր գրվում է ընտանիքի չափահաս առկա անդամներից մեկը։

Ընտանիքի գլխավորի համար առաջին հարցի պատասխանը գրվում է «գլխավոր»։ Ընտանիքի բոլոր մնացած անդամների համար գրվում է նրանց առնչությունը ընտանիքի գլխավորի հետ։

Եթե հարցման ենթարկվողը հանդիսանում է ընտանիքի գլխավորը կամ անդամը և մշտապես ապրում է ընտանիքից անջատ,

բայց ունի կանոնավոր նյութական կապ ընտանիքի հետ և ընդհանուր բյուջե, առաջին հարցի պատասխանի փոխարեն գիծ է քաշվում, իսկ կանոնավոր նյութական կապի և ընդհանուր բյուջեի բացակայության դեպքում գրվում է «միայնակ»։ Ընտանիք չունեցող բոլոր անձերի համար նույնպես գրվում է «միայնակ»։

Խնամակալվող երեխաները մտցվում են ընտանիքի կազմի մեջ։ Նրանց համար առաջին հարցի պատասխանում գրվում է «խնամակալվող»։

Տնային ծառայողը չի մտցվում այն ընտանիքի կազմի մեջ, որտեղ նա աշխատում է, և ցուցակագրվում է որպես միայնակ, իսկ եթե նա ունի ընտանիքի անդամներ՝ որպես առանձին ընտանիք։ Եթե նրա ընտանիքը, որի հետ նա կանոնավոր նյութական կապ է պահպանում, ապրում է առանձին, ապա նա ցուցակագրվում է որպես ընտանիքի առանձին ապրող անդամ (այս դեպքում առաջին հարցի պատասխանում գիծ է քաշվում)։

**ԵՐԿՐՈՐԴ ՀԱՐՑ.** Մշտական բնակվողի, բայց ժամանակավոր բացակայողի համար գրել, «ժամանակավոր բացակայում է» և նշել, որքան ժամանակ է բացակայում



Ժամանակավոր բացակայողներ են համարվում բոլոր այն անձինք, որոնք սովորաբար ապրում են այստեղ (մշտական), բայց հունվարի 14-ի լույս 15-ի գիշերը եղել են տվյալ քաղաքային, ավանային կամ գյուղական Սովետի տերիտորիայի սահմաններից դուրս (օրինակ՝ նրանք, ովքեր մեկնել են ժամանակավոր կամ սեզոնային աշխատանքի, գործուղման, դպրոցական արձակուրդ, արտադրական պրակտիկայի, հարազատների և ծանոթների մոտ), եթե նրանց բացակայությունը վեց ամսից ավելի չէ։ Այդ բոլոր անձինք ըստ իրենց մշտական բնակության վայրի գրվում են մարդահամարի թերթերի մեջ, նշելով ժամանակավոր բացակայության մասին: Այդ բոլոր անձերի համար երկրորդ հարցի պատասխանում գրվում է «ժամանակավորապես բացակայում է» և նշվում է բացակայության ամիսների թիվը։ Մեկ ամսից պակաս բացակայության դեպքում գրվում է «մեկ ամսից պակաս»։

Տվյալ շենքում որպես առկա բնակչություն մարդահամարի ենթակա անձերի համար 2-րդ հարցի պատասխանի փոխարեն գիծ է քաշվում։

**ԵՐՐՈՐԴ ՀԱՐՑ.** Ժամանակավոր բնակվողի համար

նշել՝ ա) Մշտական բնակավայրը բ) Որքան ժամանակ է բացակայում մշտական բնակավայրից

Ժամանակավոր բնակվողներ են համարվում այն անձինք, որոնք մարդահամարի պահին եղել են այդտեղ, մինչդեռ նրանց մշտական բնակության վայրը գտնվում է այն քաղաքային, ավանային կամ գյուղական Սովետի սահմաններից դուրս, որի տերիտորիայում տվյալ անձը գտնվել է մարդահամարի պահին: Այդ բոլոր անձերի համար երրորդ հարցի պատասխանում պետք է գրված լինի ռեսպուբլիկայի, մարզի (երկրամասի), շրջանի և բնակավայրի անունը, որտեղ գտնվում է նրանց մշտական բնակության վայրը, ինչպես նաև նրանց մշտական բնակության վայրից բացակայելու ամիսների թիվը։ Եթե բացակայության տևողությունը մեկ ամսից պակաս է, գրվում է «մեկ ամսից պակաս»։

Տվյալ շենքում որպես մշտական բնակչություն մարդահամարի ենթակա անձանց համար 3-րդ հարցի պատասխանի փոխարեն գիծ է քաշվում։

ՉՈՐՐՈՐԴ ՀԱՐՑ. Սեռը (արական, իգական)

Պատասխանը գրվում է կրճատ «ար» կամ «իգ»։ Սակայն չի կարելի գրել միայն մեկ տառով՝ «ա» կամ «ի»։



ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Քանի տարին է լրացել, մեկ տարեկանից փոքր երեխաների համար՝ ամիսը

Մեկ տարեկանից մեծ անձանց համար թվանշաններով գրվում է միայն լրացած տարիների թիվը, օրինակ՝ մարդահամարի պահին 27 տարին 11 ամիսը կամ 27 տարին 1 ամիսը լրացած անձանց համար գրվում է 27 տարեկան։ Մեկ տարեկանից փոքր երեխաների համար գրվում է միայն լրացած ամիսների թիվը։ Մեկ ամսականից փոքր երեխաների համար գրվում է «մեկ ամսից պակաս»։

Պետք է նկատի ունենալ, որ տարիքի մասին ցուցմունքները հաճախ տրվում են կլոր թվերով։ Այսպես, օրինակ՝ երեսունինը տարեկանները ասում են, թե իրենք քառասուն տարեկան են, երեսունվեց տարեկանները՝ թե երեսունհինգ տարեկան և այլն։ 22 տարին և 10 ամիսը լրացրած անձինք երբեմն իրենց հասակը կլոր թվով դարձնում են 23 տարեկան։ Հաշվարարը պարտավոր է ծննդյան թվականը և օրը պարզելու միջոցով որոշել հարցման ենթարկվողների ճիշտ տարիքը, առանց կլոր թվով արտահայտելու։

ՎԵՑԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Ներկայումս ամուսնացած է, թե ոչ։

Ներկայումս ամուսնության մեջ գտնվող-
ների համար, անկախ նրանից, գրանցված
է ամուսնությունը, թե ոչ, գրվում է «այո»։
Այրիների համար գրվում է «այրի», մնացած
չամուսնացածների համար գրվում է «ոչ»։

ՅՈԹՆԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Ազգություն

Գրվում է այն ազգությունը, որ նշում է
ինքը՝ հարցման ենթարկվողը։ Երեխաների
ազգությունը որոշվում է ծնողների կողմից։
Այն ընտանիքներում, որտեղ հայրը և մայ-
րը պատկանում են տարբեր ազգությունների
և ծնողներն իրենք դժվարանում են ո-
րոշել երեխաների ազգությունը, պետք է
նախապատվությունը տալ մոր ազգությա-
նը։

ՈՒԹԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Մայրենի լեզուն

Գրվում է այն լեզվի անունը, որն ինքը՝
հարցման ենթարկվողը, համարում է իր
մայրենի լեզուն։ Եթե հարցման ենթարկվո-
ղը դժվարանում է որպես մայրենի լեզու
անվանել որևէ լեզու, պետք է գրել այն
լեզվի անունը, որին հարցման ենթարկվողը
ավելի լավ է տիրապետում կամ որով սո-
վորաբար օգտվում է ընտանիքում։

Դեռ խոսել չկարողացող երեխաների
համար որպես մայրենի լեզու գրվում է այն



լեզուն, որով սովորաբար խոսում են ըն-
տանիքում։

Խուլ ու համրերի մայրենի լեզուն հա-
մարվում է այն լեզուն, որով նրանք գրում
ու կարդում են կամ որով խոսում են նրանց
ընտանիքը կամ այն անձինք, որոնց հետ
նրանք առավելապես շփում ունեն։

Մայրենի լեզուն կարող է չզուգադիպել
ազգությանը։

ԻՆՆԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Ո՞ր պետության քաղաքացի է

ՍՍՌ Միության քաղաքացիների համար
գրվում է «ՍՍՌՄ», իսկ օտարերկրացիների
համար՝ այն պետության անունը, որի քա-
ղաքացին է հարցման ենթարկվողը։ Քաղա-
քացիություն չունեցող անձերի համար գրել
«քաղաքացիություն չունի»։

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Կրթությունը՝ բարձրագույն,
թերի բարձրագույն, միջնակարգ մասնագիտական,
ընդհանուր միջնակարգ, յոթնամյա, տարրական:
Տարրական կրթություն չունեցող 9 տարեկան և ավե-
լի մեծ անձանց համար նշել՝ որևէ լեզվով կարդում
և գրում է թե միայն կարդում է կամ բոլորովին
անգրագետ է

Բարձրագույն ուսումնական հաստատու-
թյուն ավարտողների համար գրվում է
«բարձրագույն»։

Բարձրագույն ուսումնական հաստատու-

թյուններում սովորողների ու սովորածների և ուսուցման ժամանակի առնվազն կեսն անցածների համար գրվում է «թերի բարձրագույն»։

Տեխնիկում կամ այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություն ավարտողների համար գրվում է «միջնակարգ մասնագիտական»։

Տասնամյա, իննամյա, երկրորդ աստիճանի դպրոցներ, մինչռևոլյուցիոն գիմնազիա, առևտրական ուսումնարան կամ այլ միջնակարգ դպրոց ավարտողների համար գրվում է «ընդհանուր միջնակարգ»։

Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների ու սովորածների և ուսուցման տևողության կեսից պակաս անցածների համար գրվում է «ընդհանուր միջնակարգ» կամ «միջնակարգ մասնագիտական», նայած թե ինչպիսի ուսումնական հաստատություն է ավարտել հարցման ենթարկվողը մինչև բարձրագույն ուսումնական հաստատություն ընդունվելը։

Յոթնամյա դպրոցը կամ միջնակարգ դպրոցի յոթերորդ դասարանը ավարտողների, ինչպես նաև միջնակարգ դպրոցի 8—10-րդ դասարաններում սովորողների ու սովորածների, բայց 10-րդ դասարանը չա-



վարտածների, մինչռևոլյուցիոն պրոգիմնազիաները, բարձրագույն նախնական և քաղաքային ուսումնարանները, զանազան անուններ կրող 7 տարի և ավելի տևողությամբ ցածր մասնագիտական ուսումնական հաստատություններն ավարտածների համար գրվում է «յոթնամյա»։ Ընդ որում միջնակարգ դպրոցի 8—10-րդ դասարաններում սովորողների ու սովորածների, բայց 10-րդ դասարանը չավարտածների համար, բացի դրանից, փակագծերի մեջ գրվում է դասարանը, որտեղ սովորում կամ որից հեռացել է, օրինակ՝ «յոթնամյա (սովորում է 9-րդ դասարանում)» կամ «յոթնամյա (հեռացել է 10-րդ դասարանից)», իսկ յոթնամյակն ավարտելուց հետո տեխնիկումում սովորողների կամ սովորածների համար գրվում է կուրսը, որտեղ սովորում է կամ որից հեռացել է, օրինակ՝ «յոթնամյա (սովորում է տեխնիկումի 2-րդ կուրսում)» կամ «յոթնամյա (հեռացել է տեխնիկումի 3-րդ կուրսից)»։

Տարրական դպրոցը և յոթնամյա կամ միջնակարգ դպրոցի 4-րդ դասարանը ավարտողների, ինչպես նաև 5—7-րդ դասարաններում սովորողների կամ սովորածների, բայց 7-րդ դասարանը չավարտածների

*համար գրվում է «տարրական»։ Ընդ որում 5—7-րդ դասարաններում սովորողների և սովորածների, բայց 7-րդ դասարանը չավարտածների համար, բացի դրանից, փակագծերի մեջ գրվում է դասարանը, որտեղ սովորում է կամ որից հեռացել է, օրինակ՝ «տարրական (սովորում 6-րդ դասարանում)» կամ «տարրական (հեռացել է 7-րդ դասարանից)»։*

*Ընդհանուր կրթություն չտվող ուսումնական հաստատությունները, (օրինակ՝ հաշվապահական դասընթացներ, ֆաբգործուսի դպրոցներ, պատրաստման, վերապատրաստման և որակի բարձրացման զանազան դասընթացներ և այլն) ավարտողների, ինչպես նաև այդ ուսումնական հաստատություններում սովորողների համար գրվում է հանրակրթական դպրոցներում մինչև տվյալ ուսումնական հաստատությունում ընդունվելը ստացած կրթությունը։*

*Հեռակա և երեկոյան ուսումնական հաստատությունների, ինչպես նաև էքստեռնատի ավարտումը հավասարեցվում է համապատասխան ուսումնական հաստատությունների ավարտմանը։*

*Առանձին դեպքերում, երբ հարցման ենթարկվողը դժվարանում է որոշել իր կրթու-*



*թյան մակարդակը, հաշվարարը որպես բացառություն պետք է 10-րդ հարցի պատասխանում մանրամասնորեն գրի այն ուսումնական հաստատության անունը, որն ավարտել է հարցման ենթարկվողը, կամ քանի դասարան է անցել։*

*Տարրական կրթություն չունեցող, բայց կարդալ և գրել կարողացող ինը տարեկան և ավելի մեծ անձանց համար գրվում է «կարդում ու գրում է»։ Որևէ լեզվով, թեկուզ և դանդաղ, միայն կարդալ կարողացող անձերի համար գրվում է «կարդում է»։ Գրվում է «անգրագետ» այն անձերի համար, որոնք չեն կարողանում ոչ կարդալ և ոչ էլ գրել։*

*Ինը տարեկանից փոքր երեխաների համար տասներորդ հարցի պատասխանի փոխարեն գիծ է քաշվում։*

ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Սովորողների համար նշել այն ուսումնական հաստատության (ինստիտուտի, տեխնիկումի, դպրոցի, ուսումնարանի, դասընթացների) լրիվ անունը, որտեղ սովորում է

*Այս հարցին պատասխանում են ցերեկային, երեկոյան և հեռակա բոլոր ուսումնական հաստատությունների ու դասընթացների սովորողները, անկախ նրանից, թե*

նրանք սովորում են առանց արտադրությունից կտրվելու, թե ոչ։

Մեկ ամսից պակաս տևողության դասընթացների և խմբակների պարապմունքները պատասխանում չեն նշվում։

11-րդ հարցի պատասխանում գրվում է ուսումնական հաստատության կամ դասընթացների լրիվ անունը։

Միաժամանակ երկու ուսումնական հաստատություններում սովորողների համար գրվում է ավելի բարձր տիպի ուսումնական հաստատությունը։

Ոչ մի տեղ չսովորող անձերի համար պատասխանում գրվում է «ոչ»։

ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Աշխատանքի վայրը (ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության անունը) կամ աշխատում է իր տնտեսությունում

Ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, հիմնարկություններում, կազմակերպություններում աշխատողների համար 12-րդ հարցի պատասխանում պետք է գրվի այն ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության, կազմակերպության լրիվ անունը, որտեղ աշխատում է հարցման ենթարկվողը, ընդ որում ձեռնարկության անունը պետք է նշել այնպես, որ հնարավոր լինի որոշել արտադրության տեսակը։



Բազմաճյուղ կոմբինատի համար նշվում է նաև գործարանի, ցեխի կամ արհեստանոցի արտադրության տեսակը որոշող անունը։

Աշխատանքի վայրը գրելիս չի կարելի ձեռնարկության կամ հիմնարկության անունը գրել կրճատ։ Թույլատրվում է գրել միայն հանրածանոթ կրճատ անունները, օրինակ՝ ՄՏ կայան, ՆՏ կայան, սովխոզ, ՁԱԳՍ և այլն։

Եթե ձեռնարկությունը պատկանում է սովխոզին, կոլտնտեսությանը կամ արհեստագործական արտելին, նշվում է ձեռնարկության տեսակի և սովխոզի, կոլտնտեսության կամ արտելի անունը։

Բազմաարհեստագործական արտելի համար նշվում է արտելի, ինչպես նաև ցեխի կամ արհեստանոցի անունը։

Ձեռնարկություններին և հիմնարկություններին առընթեր ճաշարաններում, մանկամսուրներում, բուժակետերում, վարսավիրանոցներում և այլ հաստատություններում աշխատող անձանց համար գրվում է ճաշարանի, մանկամսուրի, բուժակետի, վարսավիրանոցի և այլ հաստատությունների անունները, այլ ոչ թե այն ձեռնար-

կոմբյան կամ հիմնարկության անունը, որի աշխատողներին նրանք սպասարկում են։

Եթե հարցման ենթարկվողը աշխատում է հիմնարկությունում, աշխատանքի վայրը գրվում է այնպես, որ երևա, թե դա ինչպիսի հիմնարկություն է՝ միութենական նշանակության, ռեսպուբլիկական, մարզային, թե՞ շրջանային նշանակության, օրինակ՝ «ՍՍՌՄ Առողջապահության մինիստրություն», «Գյուղատնտեսության մարզային վարչություն», «Ժողովրդական կրթության շրջանային բաժին»։

Կապալային շինարարական կազմակերպությունում աշխատող անձերի համար նշվում է այդ կազմակերպության անունը, օրինակ՝ «Շինարարա-մոնտաժային վարչություն № 14»։

Արդյունաբերական, տրանսպորտային, կոմունալ և այլ ձեռնարկությունների շինարարության ու հիմնական վերանորոգման վրա աշխատող անձերի համար անհրաժեշտ է գրել «Փայտասղոցարանի շինարարության վրա», «Բոլշևիկ» հրուշակեղենի ֆաբրիկայի շենքի վերանորոգման վրա», «Երկաթուղային կամրջի վերանորոգման վրա» և այլն։

Ազատ զբաղմունքի տեր անձանց (որևէ



հիմնարկության հաստիքների մեջ չմտնող գրողների, նկարիչների, կոմպոզիտորների, բժիշկների և դրանց նմանների) համար գրվում է «ազատ զբաղմունքի տեր անձ»։

Մարդահամարի պահին ձեռնարկություններում, հիմնարկություններում և կազմակերպություններում աշխատող կոմպոզիտորների, երաժիշտների, նկարիչների, ճարտարապետների, բժիշկների և դրանց նմանների համար աշխատանքի վայրի մասին հարցի պատասխանում նշվում է ձեռնարկության, հիմնարկության և կազմակերպության անունը։

Միայն գյուղատնտեսությամբ զբաղվող մենատնտես գյուղացիների և նրանց ընտանիքի անդամների, ինչպես նաև իրենց տներում աշխատող չկոոպերացված տնայնագործների համար գրվում է «իր տնտեսությունում»։

Մասնավոր անձանց մոտ միանվագ պատվերներ կատարող չկոոպերացված տնայնագործների համար գրվում է «մասնավոր անձերի մոտ»։

Մասնավոր անձանց մոտ վարձով աշխատողների (տնային ծառայողների, դայակների, շոֆերների և դրանց նմանների) համար գրվում է վարձակալի ազգանունը։

Ներկայումս երկու կամ մի քանի տեղ համատեղության կարգով աշխատող անձերի համար նշվում է հիմնական աշխատանքի վայրը։

Քարնանը, ամռանը կամ աշնանը սեզոնային աշխատանքներում (օրինակ՝ տորֆահանքերում, ջրային տրանսպորտում, ձկնորսության մեջ) զբաղված, իսկ ձմռանը չաշխատող անձերի համար գրվում է վերջին սեզոնի աշխատանքի վայրը։

Գարնանը, ամռանը և աշնանը մի ձեռնարկությունում (հիմնարկությունում, կազմակերպությունում), իսկ ձմռանը մի ուրիշ ձեռնարկությունում (հիմնարկությունում, կազմակերպությունում) աշխատող անձերի համար գրվում է այն ձեռնարկության (հիմնարկության, կազմակերպության) անունը, որտեղ կատարվող աշխատանքը հարցման ենթարկվողը համարում է հիմնականն իր համար։

Կոլտնտեսության այն անդամների համար, որոնք մարդահամարի պահին զբաղված են ժամանակավոր աշխատանքով արդյունաբերության մեջ, շինարարության վրա, փայտամթերումներում և այլ ճյուղերում, բայց մշտապես աշխատում են կոլտնտե-



սությունում, գրվում է կոլտնտեսության անունը։

Աշխատանքի վայրը փոխելու կապակցությամբ մարդահամարի պահին չաշխատող անձերի համար գրվում է «աշխատանքը փոխում է, նախկին աշխատանքի վայրը այսինչ տեղն է»։

Կոլտնտեսականների ընտանիքի այն անդամների համար, որոնք զբաղված են միայն իրենց օժանդակ տնտեսությունում անասունների խնամքով կամ գյուղատնտեսական աշխատանքներով, գրվում է կոլտնտեսության անունը։

Բանվորների, ծառայողների, կոոպերացված և չկոոպերացված տնայնագործների ընտանիքի այն անդամների համար, որոնք զբաղված են օժանդակ գյուղատնտեսությամբ, գրվում է «անձնական օժանդակ գյուղատնտեսության մեջ»։

Ֆաբգործուսի դպրոցներում սովորողների համար նշվում է այն ձեռնարկության անունը, որին առընթեր գտնվում է ֆաբգործուսի դպրոցը։ Մնացած բոլոր սովորողների, ներառյալ Աշխատանքային ռեզերվների գլխավոր վարչության դպրոցների և ուսումնարանների (արհեստագիտական ուսում-

նարաններ, ֆաբգործուսի և այլ դպրոցների) սովորողների համար գրվում է «ոչ»։

Եթե սովորողը միաժամանակ ունի աշխատանք կամ վաստակ տվող զբաղմունք, գրվում է այն ձեռնարկության (հիմնարկության, կազմակերպության) անունը, որտեղ նա աշխատում է։

Վերապատրաստման և որակի բարձրացման դասընթացներում սովորողների համար գրվում է աշխատանքի կամ ծառայության վայրի անունը։

Որևէ մշտական աշխատանք ունեցող և միաժամանակ թոշակ կամ կենսաթոշակ ստացող անձերի համար գրվում է այն ձեռնարկության (հիմնարկության, կազմակերպության) անունը, որտեղ նրանք աշխատում են։

Չաշխատող թոշակառուների և կենսաթոշակառուների, ինչպես նաև ժամանակավոր աշխատանք ունեցող թոշակառուների ու կենսաթոշակառուների համար գրվում է «ոչ»։

Խնամքի տակ գտնվողների, մանկատների սաների, կոլտնտեսության կողմից խնամակալվողների և հաշմանդամների ու զառամյալների տներում ապրողների համար գրվում է «ոչ»։



ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Զբաղմունքը այդ նույն աշխատանքի վայրում (պաշտոնը կամ ինչ աշխատանք է կատարում)

Զբաղմունքը պետք է գրել մանրամասնորեն։ Չի կարելի գրել «վարիչ», «վարպետ», այլ պետք է նշել, օրինակ՝ «գարաժի վարիչ», «հորատող վարպետ», «կրկնակոշիկ պատրաստող վարպետուհի»։ Բանվորների համար պետք է ճշտորեն գրել կոնկրետ զբաղմունքը։ Ծառայողների համար անհրաժեշտ է նշել պաշտոնը կամ կատարվող կոնկրետ աշխատանքը։ Սովխոզների, ՄՏ կայանների, ՆՏ կայանների բանվորների և կոլտնտեսականների համար պետք է ճշտիվ մատնանշվի նրանց որոշակի հատուկ աշխատանքը սովխոզում, ՄՏ կայանում կամ կոլտնտեսությունում։ Ազատ զբաղմունքի տեր անձանց համար նշել «գրող», «նկարիչ», «կոմպոզիտոր», «ատամնաբույժ» և այլն։ Մասնավոր անձերի մոտ աշխատողների համար գրվում է «տնային ծառայող», «դայակ», «շոֆեր» և այլն։

Եթե հարցման ենթարկվողը ներկայումս համատեղության կարգով կատարում է մի քանի աշխատանքներ, դրանցից գրվում է այն, որը նա կատարում է 12-րդ հարցի

պատասխանում նշված հիմնական աշխատանքի վայրում։

Գարնանը, ամռանը կամ աշնանը սեզոնային աշխատանքներում (օրինակ՝ տորֆահանքերում, ջրային տրանսպորտում, ձկնորսության մեջ) զբաղված անձանց համար նշվում է վերջին սեզոնի աշխատանքը, եթե նրանք ձմռանը ուրիշ զբաղմունք չունեն։

Գարնանը, ամռանը և աշնանը մի տեսակ, իսկ ձմռանը մի այլ տեսակ զբաղմունք ունեցող անձերի համար գրվում է այն զբաղմունքը, որը հարցման ենթարկվողը համարում է հիմնականը։

Կոլտնտեսության այն անդամների համար, որոնք մարդահամարի պահին զբաղված են ժամանակավոր աշխատանքով արդյունաբերության մեջ, շինարարության վրա, փայտամթերումներում և այլ ճյուղերում, բայց մշտապես աշխատում են կոլտնտեսությունում, գրվում է կոլտնտեսությունում նրանց կողմից կատարվող աշխատանքը։

Աշխատանքը փոխող այն անձերի համար, որոնց մասին 12-րդ հարցի պատասխանում պետք է գրված լինի «աշխատանքը փոխում է. նախկին աշխատանքի վայրը այսինչ



տեղն է», 13-րդ հարցում գրվում է «նախկին զբաղմունքը այսինչն է»։

Կոլտնտեսականների ընտանիքի այն անդամների համար, որոնք զբաղված են միայն իրենց օժանդակ տնտեսությունում անասունների խնամքով և գյուղատնտեսական աշխատանքներով, ինչպես նաև բանվորների, ծառայողների, կոոպերացված և չկոոպերացված տնայնագործների ընտանիքի այն անդամների համար, որոնք զբաղված են օժանդակ գյուղատնտեսությամբ, գրվում է «օժանդակ գյուղատնտեսություն»։

Ֆաբգործուսի դպրոցների սովորողների համար գրվում է մասնագիտությունը, օրինակ՝ «ֆրեզող աշակերտ»։

Մնացած բոլոր սովորողների, ներառյալ Աշխատանքային ռեզերվների գլխավոր վարչության դպրոցների և ուսումնարանների (արհեստագիտական ուսումնարանների, Ֆաբգործուսի և այլ դպրոցների) սովորողների համար գրվում է «ոչ»։

Եթե սովորողը միաժամանակ ունի աշխատանք կամ վաստակ տվող զբաղմունք, նշվում է այդ զբաղմունքը կամ աշխատանքը։

Վերապատրաստման և որակի բարձրացման դասընթացներում սովորողների հա-

*մար գրվում է զբաղմունքն ըստ աշխատան-քի կամ ծառայության վայրի։*

*Ուսումնական հաստատություններում սովորելը որպես զբաղմունք չի նշվում։*

*Որևէ մշտական աշխատանք ունեցող և միաժամանակ թոշակ կամ կենսաթոշակ ստացող անձերի համար նշվում է աշխա-տանքը։*

*Չաշխատող թոշակառուների և կենսաթո-շակառուների, ինչպես նաև ժամանակավոր աշխատանք ունեցող թոշակառուների ու կենսաթոշակառուների համար գրվում է «ոչ»։*

*Խնամքի տակ գտնվողների, մանկատնե-րի սաների, կոլտնտեսության կողմից խնա-մակալվողների և հաշմանդամների ու ծե-ռամյալների տներում ապրողների համար գրվում է «ոչ»։*

ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Եթե եկամտի աղբյուր հանդիսացող զբաղմունք չունի, նշել գոյության միջոցների մյուս աղբյուրը

*Զբաղմունք ունեցող բոլոր անձանց հա-մար 14-րդ հարցի պատասխանի փոխարեն գիծ է քաշվում։*

*Վաստակ կամ եկամուտ բերող զբաղմունք չունեցող, բայց գոյության միջոցների ինք-*



*նուրույն աղբյուր (կենսաթոշակ; թոշակ, ալիմենտ, շենքը վարձով տալուց ստացվող եկամուտ, խնայողություն և այլն) ունեցող անձանց համար նշվում է գոյության միջոց-ների այդ աղբյուրը։*

*Վաստակ կամ եկամուտ բերող զբաղմունք կամ գոյության միջոցների ինքնուրույն աղ-բյուր չունեցող և ուրիշների միջոցներով ապրող անձանց համար գրվում է «խնամքի տակ» և նշվում այն հերթական համարը, որով մարդահամարի թերթի մեջ գրվել է այն անձը, որի խնամքի տակ գտնվում են նրանք։*

*Կոլտնտեսության աշխատունակ այն ան-դամները, որոնք գյուղատնտեսական մթերք-ները ստանում են կոլտնտեսության ֆոն-դից, գրվում են որպես կոլտնտեսության խնամքի տակ գտնվողներ, անկախ նրանց ունեցած օժանդակ տնտեսությունից։*

*Մանկատների սաների, կոլտնտեսության կողմից խնամակալվողների համար գրվում է «մանկատուն», «կոլտնտեսության կողմից խնամակալվող»։*

*Պետության ապահովման տակ գտնվող արհեստագիտական ուսումնարաններում և գիշերօթիկ դպրոցների սովորողների համար գրվում է «արհեստագիտական ուսումնա-րան», «գիշերօթիկ դպրոց»։*

ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ ՀԱՐՑ. Հասարակական ո՞ր խմբին է պատկանում (բանվոր, ծառայող, կոլտնտեսական, կոոպերացված տնայնագործ, մենատնտես գյուղացի, չկոոպերացված տնայնագործ, ազատ զբաղմունքի տեր անձ, պաշտամունքի սպասավոր)

*Պետք է նկատի ունենալ, որ 12-րդ հարցի (աշխատանքի վայրը) և 13-րդ հարցի (զբաղմունքը) պատասխանները չեն կարող լրիվին հիմք ծառայել հարցման ենթարկվողին հասարակական այս կամ այն խմբին դասելու համար։*

*Կոլտնտեսության այն անդամները, որոնք մարդահամարի պահին զբաղված են ժամանակավոր աշխատանքով արդյունաբերության մեջ, շինարարության վրա, փայտամթերումներում և այլ ճյուղերում, բայց մշտապես աշխատում են կոլտնտեսությունում, գրվում են որպես կոլտնտեսականներ։*

*Կոլտնտեսության այն անդամները, որոնք զբաղված են մշտական աշխատանքով արդյունաբերության մեջ, շինարարության վրա, ՄՏ կայանում, ՆՏ կայանում, հիմնարկությունում և այլ ճյուղերում, չեն աշխատում կոլտնտեսության մեջ կամ մաս-*



*նակցում են կոլտնտեսության աշխատանքներին մասամբ, գրվում են «բանվոր (կոլտնտեսության անդամ)» կամ «ծառայող (կոլտնտեսության անդամ)»։*

*Կոլտնտեսականների ընտանիքի այն անդամները, որոնք զբաղված են իրենց օժանդակ տնտեսությունում (գյուղատնտեսական աշխատանքներով և անասունների խնամքով), դասվում են կոլտնտեսականների շարքը։*

*Այն անձինք, որոնք արհեստագործական կոոպերացիայի արտելի անդամներ են, դասվում են ոչ թե բանվորների ու ծառայողների, այլ կոոպերացված տնայնագործների խմբին։*

*Այն անձինք, որոնք վարձով աշխատում են արհեստագործական կոոպերացիայի հիմնարկություններում ու ձեռնարկություններում և արտելների փայատեր անդամներ չեն, դասվում են ոչ թե կոոպերացված տնայնագործների, այլ համապատասխանորեն բանվորների կամ ծառայողների խմբին։*

*Այն անձինք, որոնք զբաղվում են արհեստով իրենց տներում (իրենց տնտեսություններում), որսորդությամբ, ձկնորսությամբ կամ այլ զբաղմունք ունեն և արտե-*

լի անդամ չեն կամ չեն մտնում որևէ ձեռնարկության (հիմնարկության, կազմակերպության) հաստիքների (ցուցակային կազմի) մեջ, ինչպես նաև այն անձինք, որոնք կատարում են մասնավոր անձանց միանվագ պատվերներ, դասվում են չկոոպերացված տնայնագործների հասարակական խմբին։

Խնամքի տակ գտնվողները դասվում են հասարակական այն խմբին, որին դասվում են այն անձինք, որոնց խնամքի տակ գտնվում են նրանք։

Կենսաթոշակառուներն ու թոշակառուները դասվում են այն հասարակական խմբին, որին նրանք պատկանում էին կենսաթոշակ կամ թոշակ ստանալուց առաջ։ Եթե նրանք մինչև կենսաթոշակի կամ թոշակի անցնելը ոչ մի տեղ չեն աշխատել, ապա նրանք դասվում են այն անձանց հասարակական խմբին, որոնց խնամքի տակ գտնվել են նրանք։

---

# ՁՐՈՒՅՑ ՄԱՐԴԱՀԱՄԱՐՆԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Վ. ՇԱՀՊԱՐՈՆՅԱՆ

Դեռևս շատ հին ժամանակներում պետական իշխանության մարմինները զբաղվել են բնակչության հաշվառմամբ։ Պետությունների ռազմական և հարկային գործունեությունը, ինչպես նաև վարչական կարգավորման խնդիրները պահանջում էին տարրական տեղեկություններ բնակչության թվի և կազմի մասին։

Ազգաբնակչության մեջ հայտնի հաշվառումներից ամենահները անցկացվել են Չինաստանում՝ մեր թվարկությունից ավելի քան 2000 տարի առաջ։ Տեղեկություններ կան, որ բնակչության հաշվառումներ են կատարվել Կիևյան և Նովգորոդյան Ռուսիայում։ 1245, 1257, 1259 և 1273 թվականներին Ռուսիայում հաշվառումներ անց են կացվել թաթարների կողմից, տուրքի չափերը որոշելու նպատակով։

Բնակչության հաշվառումները առանձնահատուկ նշանակություն են ստանում 16-րդ

դարում, կենտրոնացված ռուսական պետության ստեղծման կապակցությամբ, երբ հաշվառման միավոր են հանդիսացել տնատերերի հողային տեղամասերը, որի հետ միաժամանակ հաշվառվում էր նաև բնակչությունը։

Այն մատյանները, որոնց մեջ գրանցվում էին հաշվառման արդյունքները, սկզբում կոչվում էին գրագրային գրքեր (հարկամատյաններ), իսկ հետագայում՝ հաշվեգրային մատյաններ։

1718 թվականին Պետրոս Առաջինի հրամանագրով սկիզբ դրվեց բնակչության հաշվառման նոր սիստեմի՝ ըստ շնչերի հաշվեգրման, ըստ տնտեսությունների հաշվեգրման փոխարեն։ Դրա նպատակն էր տվյալներ ստանալ բնակչության թվի մասին, նրան ըստ շնչերի հարկադրելու և զինակոչելու նպատակով։ Հետագայում բնակչության հաշվառումները ըստ շնչերի կոչվեցին ռևիզիաներ։ Ընդհանուր պետական հաշվառման այս ձևը Ռուսաստանում գոյություն ունեցավ 140 տարուց ավելի։ Այդ ժամանակամիջոցում կատարվեցին 10 ռևիզիաներ։ Յուրաքանչյուր ռևիզիան կատարվում էր մի քանի տարիների ընթացքում։

Վերջին ռևիզիան անցակցվեց 1857—1860 թվականների ընթացքում։



Ռևիզիաների ժամանակ հաշվի մեջ էին մտնում միայն հարկատու դասերը, այսինքն՝ այն բնակչությունը, որը պարտավոր էր հարկեր վճարել։ 1897 թվականի փետրվարի 8-ին (հին տոմարով հունվարի 28-ին) անցկացվեց ցարական Ռուսաստանի բնակչության առաջին և միակ համընդհանուր մարդահամարը։

Մարդահամարի ծրագիրը ուներ լուրջ թերություններ՝ նրա մեջ չէին մտցված այնպիսի հարցեր, ինչպես ազգությունը, զբաղմունքը։ Գրագիտության մասին հարցը պարզ չէր ձևակերպված։ Մարդահամարն անցկացվեց բյուրոկրատորեն։ Մարդահամարը ղեկավարում էր ներքին գործերի մինիստրը, իսկ տեղերում այն իրականացնում էին նահանգապետները, ազնվականության պարագլուխները, զեմստվոյի աշխատողները, հարկային տեսուչները և ուրիշ չինովնիկներ։ Մարդահամարի անցկացմանը ակտիվորեն մասնակցում էին նաև ռուսական ինտելիգենցիայի առաջավոր խավերի ներկայացուցիչները։

Սակայն նրանք ի վիճակի չէին վերացնելու այն թերությունները, որոնք գոյություն ունեին այդ մարդահամարի ծրագրում և նրա անցկացման կարգի մեջ։ 1897 թվականի մարդահամարի նյութերի մշակումը տևեց 8 տարուց ավելի։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո անցկացվեցին մի քանի մարդահամարներ։ Առաջին մարդահամարը և գյուղատնտեսական հաշվեգրումը կատարվեց արդյունաբերական ձեռնարկությունների կրճատ հաշվառումով։ Այդ մարդահամարն անցկացվեց 1920 թվականին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ, երբ շարունակվում էր քաղաքացիական պատերազմը և կապիտալիստական պետությունների ինտերվենցիան։

Վլադիմիր Իլյիչը մարդահամարին տալիս էր մեծ նշանակություն և սովետական իշխանության բոլոր մարմիններից, բոլոր սովետական հիմնարկություններից պահանջում էր օգնություն ցույց տալ մարդահամարի անցկացմանը։

1923 թվականի մարտի 15-ի դրությամբ անցկացվեց քաղաքային բնակչության համամիութենական մարդահամար։ Միաժամանակ անցկացվեց արդյունաբերական հաշվեգրում։ Համամիութենական երկրորդ մարդահամարը անցկացվեց 1926 թվականի դեկտեմբերի 17-ին։

Այս մարդահամարով ընդգրկվեց Սովետական Միության ամբողջ տերիտորիան և հնարավորություն տրվեց տեսնելու երիտասարդ



Սովետական պետության առաջին հաջողությունները երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման գործում։ Մարդահամարի նյութերը հիմք ծառայեցին սոցիալիզմի շինարարության առաջին հնգամյա պլանը կազմելու համար։

Համամիութենական մարդահամար անցկացվեց նաև 1937 թվականի հունվարին։ Սակայն կառավարությունը ուսումնասիրելով մարդահամարի կազմակերպման կարգը և նրա արդյունքները, գտավ, որ մարդահամարն անցկացվել է վիճակագրական գիտության տարրական հիմունքների և կառավարության կողմից հաստատված հրահանգի խախտումներով։ Մարդահամարի հիմնական թերությունը բնակչության թերահաշվառումն էր, որը հետևանք էր այն բանի, որ մարդահամարի թերթի վրա տպագրվել էր համառոտ հուշաթերթ հաշվարարի համար, որի մեջ, հակառակ կառավարական հրահանգի, ցուցում էր տրվել, որ բոլոր նրանք, ովքեր հունվարի 5-ից 6-ը չէին գիշերել յուրաքանչյուր տվյալ շենքում, պետք է հանվեն նախօրոք կազմված մարդահամարի թերթերից։ Այնինչ, գիշերային աշխատանքում գտնվողները և այլ տեղեր գնացածները, որտեղ նրանք չէին

*կարող հաշվեգրված լինել, չպետք է հանվեին մարդահամարի թերթերից։*

*Համամիութենական երրորդ մարդահամարը անցկացվեց 1939 թվականի հունվարի 17-ին։ Նա ցույց տվեց հաղթանակած սոցիալիզմի մեծագույն նվաճումները։ ՍՍՌՄ-ում այդ ժամանակ վերջնականապես լիկվիդացված էին շահագործող դասակարգերը, քաղաքում և գյուղում հաստատվել էր արտադրության սոցիալիստական եղանակը, վերացվել էր գործազրկությունը և չքավորությունը, և զգալիորեն բարձրացել աշխատավորության բարեկեցությունը։*

*1939 թվականի մարդահամարը անցկացվեց կազմակերպական և մեթոդական առավել բարձր մակարդակով։*

*Մարդահամարի նյութերի մշակումն իրականացվեց կարճ ժամկետում՝ 15 ամսում, մինչդեռ Անգլիայում, Ֆրանսիայում և ՍՍՌՄ-ից զգալիորեն պակաս բնակչություն ունեցող ուրիշ երկրներում մարդահամարի արդյունքները մշակվում են տարիների ընթացքում։*

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

---

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԴԵԿՏԵՄԲԵՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՈԳԵՇՆՉՈՂ ԵՎ ՂԵԿԱՎԱՐՈՂ ՄԵԾ ՈՒԺՆ Է

### Գրականություն

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պետություն և ռևոլյուցիա, *Երկեր, հատոր 25, էջ 516—556, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ծ ս ռ Կոմունիստական պարտիայի դերի մասին, *Երկեր, հատոր 31, էջ 283—289, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին, (1903—1953), *Հայպետհրատ, 1953։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերը, *ՍՄԿՊ XXI համագումարի զեկուցման թեզիսներ, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 14, 15, 16, 17-ի համարներում։*

Կոմունիզմը մարդկության պայծառ ապագան է, *«Պրավդա»-ի առաջնորդողը տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 21-ի համարում։*

2. ՍՍՌՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԶՈՐ ՎԵՐԵԼՔԸ ՊԱՐՏԻԱՅԻ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ ՀԵՏՈ

Գրականություն

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը, *զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1958 թվականի նոյեմբերի 6-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 7-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ճաղորդագրությունը Սովետական Միության կոլտնտեսությունների և սովխոզների կողմից հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների մթերումների 1958 թվականի պետական պլանի հաջող կատարման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 11-ի համարում։*

3. ՍՍՌՄ ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱՅԻ ՕՐԸ

Գրականություն

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱ *(Հիմնական օրենք)։*

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱ *(Հիմնական օրենք)։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ճառ Կրեմլի Մեծ պալատում, Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձի առթիվ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 11-ի համարում։*



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի 20-րդ համարում։*

Սովետական Հայաստանի 38 տարին, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի 21-րդ համարում։*

*4. ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ԴԻՄԱՎՈՐԵՆՔ ՍՄԿՊ XXI ԵՎ ՀԿՊ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐԸ*

Գրականություն

Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 9-ի համարում։*

Դեպի Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարը, *«Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 17-ի առաջնորդողը։*

Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Ճառ Հայաստանի ԼԿԵՄ Կենտրոնական Կոմիտեի հանդիսավոր պլենումում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 26-ի համարում։*

*5. 1959 ԹՎԱԿԱՆԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ*

*6. ԻՆՉՊԵՍ Է ԱՆՑԿԱՑՎԵԼՈՒ 1959 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ*





### 7. ԻՆՉՊԵՍ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ ՄԱՐԴԱՀԱՄԱՐԻ ԹԵՐԹԻ ՀԱՐՑԵՐԻՆ

## Գրականություն


Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում, *Երկեր, հատոր 3, էջ 641—656, Հայպետհրատ, 1947։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը 1959 թվականի Համամիութենական մարդահամարի մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի մայիսի 7-ի համարում։*

Մարդահամարը և պարտիական կազմակերպությունների խնդիրները, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի նոյեմբերի 8-ի համարում:

Հրահանգ 1959 թվականի Համամիութենական մարդահամարը անցկացնելու և մարդահամարի թերթը լրացնելու կարգի մասին, *Պետպլանհրատ, 1958։*

Բնակչության 1959 թվականի Համամիութենական մարդահամարը, *Հայկական ՍՍՌ քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերության հրատարակություն, 1958։*

1959 թվականի Համամիութենական մարդահամարը, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 12-րդ համարում։*


---

**ՈՒՂՂՈՒՄ**

*«Ագիտատորի բլոկնոտ»-ի № 21-ի 8-րդ էջի առաջին պարբերությունը կարդալ հետևյալ կերպ՝*

*Ներկայումս ռեսպուբլիկայում կա 808 կոլտնտեսություն և 66 սովխոզ, 29 տեխնիկական վերանորոգման կայան և 8 ՄՏԿ.... Կոլտնտեսությունների և սովխոզների դաշտերում աշխատում են ավելի քան 4358 տրակտոր, մեծ թվով կոմբայններ և այլ մեքենաներ։*

## СОДЕРЖАНИЕ



---


Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ